Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ



№ 24 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1952

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ

Ընկեր Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ պատասխանները «Նյու-Յորք թայմս»-ի դիվանագիտական թղթակից Ջեյմս Ռեստոնի հարցերին, որոնք ստացվել են 1952 թ. դեկտեմբերի 21-ին . . . . 1

*Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության կազմավորման 30 տարին . . .* 3

*Մ. ՍԱՐԳՍՅԱՆ.— Խնայողության ռեժիմը ժողովրդական տնտեսության հետագա վերելքի կարևորագույն լծակն է . . . . . . . .* 20

Օգնություն ագիտատորներին

*Սոցիալիստական մրցությունը և ագիտատորների խնդիրները . . . . . . . . . . .* 28

Ագիտացիոն աշխատանքի փորձից

*Ա. ԹԻՐԱՔՅԱՆ.— Ագիտացիան երկաթուղայինների շրջանում . . . . . . . . . . .* 36

Օգնություն ագիտատորներին

*Թեմաներ, պլաններ և գրականություն ագիտատորների զրույցների համար . . . . . . .* 44

*Նոր գրքեր . . . . . . . . . . . . . .* 48

---

Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿԿ Կենտկոմի Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—52—78*

---

# ԸՆԿԵՐ Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐԸ

## «ՆՅՈՒ-ՅՈՐՔ ԹԱՅՄՍ»-Ի ԴԻՎԱՆԱԳԻՏԱԿԱՆ ԹՂԹԱԿԻՑ ՋԵՅՄՍ ՌԵՍՏՈՆԻ ՀԱՐՑԵՐԻՆ, ՈՐՈՆՔ ՍՏԱՑՎԵԼ ԵՆ 1952 Թ. ԴԵԿՏԵՄԲԵՐԻ 21-ԻՆ

ՀԱՐՑ: Նոր տարին մոտենալու և Միացյալ Նահանգներում նոր ադմինիստրացիայի՝ իշխանության գլուխ անցնելու պահին Դուք դարձյալ մնո՞ւմ եք Ձեր այն համոզմանը, որ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունը և Միացյալ Նահանգները կարող են առաջիկա տարիներին հաշտ ապրել:

ՊԱՏԱՍԽԱՆ: Ես շարունակում եմ հավատալ, որ պատերազմը Ամերիկայի Միացյալ Նահանգների և Սովետական Միության միջև չի կարելի անխուսափելի համարել, որ մեր երկրները այսուհետև ևս կարող են հաշտ ապրել:

ՀԱՐՑ: Ձեր կարծիքով, որտե՞ղ են ժամանակակից միջազգային լարվածության աղբյուրները:

ՊԱՏԱՍԽԱՆ: Ամենուրեք և ամեն ինչում, որտեղ միայն արտահայտվում են Սովետական Միության դեմ մղվող «սառը պատերազմի» քաղաքականության ագրեսիվ գործողությունները:

ՀԱՐՑ: Կողջունեի՞ք արդյոք Դուք դիվանագիտական բանակցությունները Էյզենհաուերի նոր ադմինիստրացիայի ներկայացուցիչների հետ՝ միջազգային լարվածությունը թուլացնելու հարցով Ձեր և գեներալ Էյզենհաուերի միջև հանդիպման հնարավորությունը քննարկելու համար:

ՊԱՏԱՍԽԱՆ: Ես դրականապես եմ վերաբերվում այդպիսի առաջարկին:

ՀԱՐՑ: Կհամագործակցե՞ք Դուք արդյոք դիվանագիտական որևէ նոր միջոցառման, որը նպատակ ունենա վերջ տալու պատերազմին Կորեայում:

ՊԱՏԱՍԽԱՆ: Ես համաձայն եմ համագործակցել, քանի որ ՍՍՌՄ-ը շահագրգռված է Կորեայում պատերազմի լիկվիդացումով:



ՆՅՈՒԹԵՐ ԶԵԿՈՒՅՑՈՒՄՆԵՐԻ ԵՎ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐԻ ՄԻՈՒԹՅԱՆ ԿԱԶՄԱՎՈՐՄԱՆ 30 ՏԱՐԻՆ

*1922 թվականի դեկտեմբերի 30-ին Սովետների Համամիութենական առաջին համագումարը Վ. Ի. Լենինի և Ի. Վ. Ստալինի առաջարկությամբ պատմական որոշում ընդունեց Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության՝ սովետական ժողովուրդների կամավոր պետական միավորման մասին: ՍՍՌՄ-ի կազմավորումը լենինյան-ստալինյան ազգային իմաստուն քաղաքականության մեծագույն հաղթանակն է, բազմազգ պետության մեջ տասնյակ ազգությունների եղբայրական համակեցության՝ մինչ այդ չտեսնված մի օրինակ, որն անհնարին է կապիտալիզմի օրոք: Այն հանդիսացավ համաշխարհային պատմական նշանակություն ունեցող մի ակտ, որն ամփոփեց մեր երկրի ժողովուրդների կյանքում կոմունիստական պարտիայի ազգային քաղաքականության հոյակապ արդյունքները և նոր դարագլուխ բացեց սովե-*

տական ժողովուրդների եղբայրական բարեկամության ու համագործակցության պատմության մեջ։

Սովետական Միությունը կազմվեց սովետական երկրի ժողովուրդների անխախտ բարեկամության և փոխադարձ վստահության կայուն պատվանդանի վրա։ Սովետական սոցիալիստական բազմազգ պետության ստեղծման ամբողջ աշխատանքը ղեկավարում էին Լենինը և Ստալինը։

Սովետների Համամիութենական առաջին համագումարում հանդես գալով «Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միություն կազմելու մասին» զեկուցումով, ժողովուրդների հանճարեղ առաջնորդ ընկեր Ստալինն ասաց. «Այսօրվա օրը նոր Ռուսաստանի հաղթանակի օրն է, որը փշրեց ազգային ճնշման շղթաները, կազմակերպեց հաղթանակը կապիտալի դեմ, ստեղծեց պրոլետարիատի դիկտատուրան, արթնացրեց Արևելքի ժողովուրդներին, ոգեշնչում է Արևմուտքի բանվորներին, կարմիր դրոշը պարտիական դրոշից դարձրեց պետական դրոշ և այդ դրոշի շուրջը համախմբեց սովետական ռեսպուբլիկաների ժողովուրդներին, որպեսզի նրանց միավորի մեկ պետության մեջ, Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության մեջ, որը ապագա Համաշխարհա-



յին Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի նախատիպն է»։

Ընկեր Ստալինի այս նշանավոր խոսքերը ամբողջությամբ իրականացան պատմության հետագա ողջ ընթացքում։ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, ընկեր Ստալինի առաջնորդությամբ, անցել է պայքարի և հաղթանակների փառավոր ուղի, դառնալով խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի անառիկ պատվարը ամբողջ աշխարհում։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի փոթորիկների մեջ ծնունդ առած Սովետական պետությունը թաղեց ժողովուրդների ճնշման և ազգամիջյան թշնամանք հրահրելու ցարիզմի քաղաքականությունը և հռչակեց ժողովուրդների ազատության և իրավահավասարության քաղաքականություն, լիակատար վստահության հիման վրա՝ նրանց կամավոր դաշինքի քաղաքականությունը։

1917 թվականի նոյեմբերի 16-ին, Սովետական կառավարությունը հրատարակեց ընկեր Ի. Վ. Ստալինի կողմից գրված «Ռուսաստանի ժողովուրդների իրավունքների դեկլարացիան», որը կոչ էր անում ստեղծելու Ռու-

սաստանի ժողովուրդների կամավոր և կայուն միություն՝ իմպերիալիստական բուրժուազիայի ամեն տեսակի ոտնձգությունները լիկվիդացնելու համար։

Շնորհիվ Կոմունիստական պարտիայի ազգային հեռատես և իմաստուն քաղաքականության, որն անմիջականորեն ղեկավարում էր ազգային հարցի անգերազանցելի գիտակ ընկեր Ստալինը, ստեղծվեցին բոլոր պայմանները Ռուսաստանի ժողովուրդների ազատ և կամավոր պետական միության կազմակերպման համար։

ՌՍՖՍՌ-ն ազատ ազգերի առաջին կամավոր միությունն էր, ՍՍՌՄ-ի նախատիպը և խոշորագույն քայլ Ռուսաստանի բոլոր ժողովուրդների համախմբման ու միավորման ուղղությամբ։

ՌՍՖՍՌ-ի հնգամյա փորձը լիովին հաստատեց սովետական բազմազգ պետության կենսունակությունը։ Այդ փորձից ելնելով՝ 1922 թվականին կազմվեց Անդրկովկասի Սովետական Ֆեդերատիվ Սոցիալիստական ռեսպուբլիկան, որը հսկայական դեր խաղաց Անդրկովկասում ազգային խաղաղության հաստատման և սոցիալիզմի կառուցման գործում։ Քաղաքացիական պատերազմի հաղթական ավարտումից հետո անցումը խաղաղ



շինարարության, ամբողջ սրությամբ դրեց սովետական ժողովուրդների է՛լ ավելի սերտ համախմբման և նրանց մեկ միասնական պետական միության մեջ միավորվելու կենսական անհրաժեշտությունը։

Սոցիալիզմի կառուցման համար սովետական բոլոր ռեսպուբլիկաների ուժերը համախմբելու, նրանց ազգային բազմակողմանի զարգացումը, քաղաքական ու տնտեսական լիակատար անկախությունը և կայուն պաշտպանությունն ապահովելու, ժողովուրդների ինտերնացիոնալ կապերն ուժեղացնելու համար հրամայաբար անհրաժեշտ էր ստեղծել միասնական միութենական պետություն և մի կուռ ընտանիքում համախմբել Սովետական Սոցիալիստական ռեսպուբլիկաները։ Սովետական ռեսպուբլիկաների ամբողջ նախընթաց զարգացումը նախապատրաստել էր անցումն սովետական ժողովուրդների համագործակցության այդ բարձրագույն ձևին։ Ինչպես նշում է ընկեր Ստալինը 1922 թվականի նոյեմբերի 18-ին «Պրավդա» թերթի թղթակցի հետ ունեցած զրույցում, սովետական ռեսպուբլիկաների միավորիչ շարժման նախաձեռնությունը պատկանում է ռեսպուբլիկաներին իրենց։

1922 թվականի դեկտեմբերի 30-ին ՍՍՌՄ

Սովետների առաջին համագումարը հաստատեց ՍՍՌՄ կազմելու դեկլարացիան և միութենական պայմանագրերը։

Սովետական Միության կազմավորումով սովետական երկրի ժողովուրդների միջև ծընունդ առան և զարգացան բարեկամության ու համագործակցության՝ պատմության մեջ մինչ այդ չտեսնված հարաբերություններ։ ՍՍՌՄ-ում ապրող բոլոր ժողովուրդները ձեռք բերին և զարգացրին իրենց պետականությունը։ Ցարական Ռուսաստանի ազգային ծայրամասերը ընդամենը 30 տարում, սովետական իշխանության օրով, գաղութներից և կիսագաղութներից վերածվեցին իրոք ինքնուրույն պետությունների՝ իրենց տերիտորիան, իրենց կոնստիտուցիան, իրենց օրենսդրությունն ունեցող սովետական ռեսպուբլիկաների։

Սովետական Միության Կոմունիստական պարտիան և կառավարությունը ՍՍՌՄ ամբողջ ժողովրդական տնտեսության զարգացման բարձր մակարդակի հետ մեկտեղ ապահովեցին տնտեսապես հետամնաց ազգային ռեսպուբլիկաների ավելի արագ զարգացումը։ Այսպես, օրինակ, Արևելքի սովետական ռեսպուբլիկաներում 1928 թվականից մինչև 1951 թվականը ընկած ժամանակաշրջանում



խոշոր արդյունաբերության արտադրանքն աճել է 22 անգամ, մինչդեռ ամբողջությամբ վերցրած ՍՍՌՄ-ում այդ նույն ժամանակամիջոցում այն աճել է 16 անգամ։

Լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության հետևողական իրագործման շնորհիվ, սովետական երկրի բոլոր ժողովուրդները վերացրել են իրենց քաղաքական, տնտեսական և կուլտուրական վաղեմի հետամնացությունը, ակտիվ մասնակցություն ցուցաբերելով մեր երկրում սոցիալիստական հասարակության կառուցման մեծ գործին։ Սովետական Միությունում սոցիալիստական շինարարության տարիներին կազմվեցին և ամրապնդվեցին նոր, սոցիալիստական ազգեր։ Սովետական սոցիալիստական ռեսպուբլիկաները սովետական իշխանության և հատկապես ստալինյան հնգամյակների տարիներին տնտեսական և կուլտուրական տեսակետից այնպիսի հսկայական թռիչք գործեցին, որ իրենց հետևում թողեցին ոչ միայն Արևելքի, այլև Արևմտյան Եվրոպայի կապիտալիստական երկրներին։ Դեռ ոչ հեռու անցյալում, Ռուսաստանի արևելյան ծայրամասերը արդյունաբերության զարգացման մակարդակի տեսակետից գրեթե չէին տարբերվում իրենց այնպիսի հարևաններից, ինչ-

պիսիք են՝ Թյուրքիան, Իրանը, Աֆղանստանը։ Եթե Արևելքի Սովետական ռեսպուբլիկաները համեմատենք կապիտալիստական մի շարք երկրների հետ ինդուստրիալ զարգացման մակարդակի այնպիսի կարևոր ցուցանիշի տեսակետից, ինչպիսին է էլեկտրաէներգիան, ապա կտեսնենք, որ մոտ 17 միլիոն բնակչություն ունեցող սովետական այդ 5 ռեսպուբլիկաներում արտադրվում է երեք անգամ ավելի շատ էլեկտրաէներգիա, քան Թյուրքիայում, Իրանում, Պակիստանում, Եգիպտոսում, Իրաքում, Սիրիայում և Աֆղանըստանում՝ միասին վերցրած, որոնց բնակչությունը 156 միլիոն է։

Սովետական Ադրբեջանն արտադրում է 4 անգամ ավելի շատ էլեկտրաէներգիա, քան ամերիկյան «օգնության» օղակն իր վզին փաթաթած Թյուրքիան, որը 7 անգամ ավելի բնակչություն ունի, քան Ադրբեջանական ՍՍՌ-ն։

Մեր սովետական ռեսպուբլիկաներն իրենց զարգացմամբ մեծ չափով առաջ են անցել նաև Արևմտյան Եվրոպայի կապիտալիստական երկրներից։ Սովետական Ուկրաինան, որն իր գոյության ընթացքում երկու անգամ ստիպված էր օտարերկրյա զավթիչների հարձակումից հետո ոտքի կանգնել



ավերակների ու մոխրի միջից, այժմ ձուլում է ավելի շատ չուգուն, քան Ֆրանսիան և Իտալիան՝ միասին վերցրած, պողպատ ու գլանվածք տալիս է ավելի շատ, քան Ֆրանսիան, 3 անգամ ավելի շատ՝ քան Իտալիան, ածուխ արդյունահանում է մեկ և կես անգամ ավելի, քան Ֆրանսիան և Իտալիան միասին, թողարկում տրակտորներ ըստ կարողության համարյա 3 անգամ ավելի, քան Ֆրանսիան և Իտալիան միասին, հացահատիկ, կարտոֆիլ, շաքարի ճակնդեղ և շաքար տալիս է զգալիորեն ավելի շատ, քան Ֆրանսիան և Իտալիան՝ միասին վերցրած։

Սովետական Միության ժողովուրդների եղբայրական ընտանիքում, լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության հետևողական կենսագործման շնորհիվ սոցիալիզմի կառուցման բոլոր բնագավառներում աննախընթաց հաղթանակներ է ձեռք բերել և Սովետական Հայաստանը։ Բավական է նշել, որ Սովետական Հայաստանի արդյունաբերական ձեռնարկությունները 1952 թվականին թողարկում են 65 անգամ ավելի արտադրանք, քան 1913 թվականին։ Ինչպես ասաց ՀԿԳ Կենտկոմի քարտուղար ընկ. Գր. Հարություն-

յանը պարտիայի 19-րդ համագումարում արտասանած ճառում, ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքը, 1940 թվականի համեմատությամբ, աճել է 4,2 անգամ, էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 3,3 անգամ։

Է՛լ ավելի հոյակապ են Սովետական Միության ժողովուրդների նվաճումները կուլտուրական շինարարության ասպարեզում։ Բարձրագույն կրթության զարգացման աստիճանով սովետական ռեսպուբլիկաները մեծ չափով առաջ են անցել ոչ միայն Արևելքի արտասահմանյան երկրներից, այլև Արևմտյան Եվրոպայի երկրներից։ Միայն Սովետական Հայաստանում ավելի շատ բարձրագույն ուսումնական հաստատություն կա, քան Թյուրքիայում և Իրանում՝ միասին վերցրած և ավելի շատ, քան 350 միլիոն բնակչություն ունեցող Հնդկաստանում։ Տաջիկական ՍՍՌ-ում 10.000 բնակչից բուհերում սովորում են 58 մարդ, Թուրքմենական ՍՍՌ-ում 60, Կիրգիզական ՍՍՌ-ում՝ 64, Ուզբեկական ՍՍՌ-ում՝ 71, Ադրբեջանական ՍՍՌ-ում՝ 93 մարդ։ Մինչդեռ Իրանում 10.000 բնակչից բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորում են 3 մարդ, Հնդկաստանում՝ 9, Եգիպտոսում և Թյուրքիայում՝ 12, Շվեդիայում՝ 21, Իտա-



լիայում՝ 32, Դանիայում՝ 34, Ֆրանսիայում՝ 36 մարդ։ Սովետական իշխանության տարիներին 48 ազգություններ ստեղծեցին իրենց գիրն ու գրականությունը և մայրենի լեզվով հրատարակում են դասագրքեր, գրքեր, թերթեր։

Անհամեմատելի չափերով աճել է Սովետական Միության բնակչության բարեկեցության մակարդակը։ Հատկանշական է, որ եթե Ֆրանսիայում հազար մարդուն ընկնում է մեկ բժիշկ, ապա Վրացական ՍՍՌ-ում 373 մարդուն և Հայկական ՍՍՌ-ում 483 մարդուն է ընկնում մեկ բժիշկ։

Հինգերորդ հնգամյակի վերաբերյալ պարտիայի 19-րդ համագումարի ընդունած դիրեկտիվները նախատեսում են ՍՍՌՄ բոլոր ժողովուրդների էկոնոմիկայի ու կուլտուրայի հետագա զարգացում, նրանց բարեկեցության նոր վերելք։

Սովետական Միության պատմական մեծ փորձը ակնառու կերպով վկայում է, որ միայն սոցիալիզմի բազայի վրա է հնարավոր հասնել ժողովուրդների լիակատար իրավահավասարության և նրանց հոգևոր ու նյութական բարգավաճման, ժողովուրդների բարեկամության հաստատման լիակատար հաղթանակին։

* * *

ՍՍՌՄ ժողովուրդների ստալինյան բարեկամությունն անցել է շատ փորձությունների միջով։ Հիտլերյան կոալիցիայի դեմ սովետական ժողովրդի մղած Հայրենական Մեծ պատերազմը Սովետական Միության ժողովուրդների բարեկամության ամրության ամենալուրջ քննությունն էր։

Հայրենական Մեծ պատերազմը վառ կերպով ցույց տվեց ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամության կենսատու ուժը, որը Սովետական Միության ուժի և հզորության գլխավոր աղբյուրներից մեկն է։

«Սովետական պետական կարգը,— ասաց ընկեր Մալենկովը պարտիայի 19-րդ համագումարում,— որը դիմացավ պատերազմի ծանր փորձություններին, ամբողջ աշխարհի համար դարձել է ազգերի իսկական իրավահավասարության և համագործակցության օրինակ և տիպար, ցուցադրում է ազգային հարցի վերաբերյալ լենինյան-ստալինյան գաղափարների մեծ հաղթանակը։ Մեր պարտիան պահպանում է և այսուհետև էլ աչքի լույսի պես կպահպանի ՍՍՌՄ ժողովուրդների միասնությունն ու բարեկամությունը, ամրապնդել է և այսուհետև էլ կամրապնդի սովետական բազմազգ պետությունը»։



Հայրենական Մեծ պատերազմից հետո սովետական երկրի ժողովուրդների բարեկամությունը նոր ուժով արտահայտվեց թշնամու օկուպացմանը ենթարկված տերիտորիայի ժողովրդական տնտեսության վերականգնմանը ՍՍՌՄ բոլոր ժողովուրդների կողմից ցույց տրված ամենաջերմ մասնակցության մեջ։

ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամությունը և համագործակցությունը այժմ մարմնավորվում է կոմունիստական հասարակարգի կառուցման համար սովետական մարդկանց հանդես բերած աշխատանքային հերոսության մեջ։ Շնորհիվ սովետական պետական կարգի առավելությունների՝ մեր երկիրը Սովետական իշխանության 35 տարիների ընթացքում արդյունաբերական այնպիսի պրոգրես է ձեռք բերել, որին հասնելու համար կապիտալիստական երկրներին պետք էին հարյուրամյակներ։ Եթե ՍՍՌՄ-ը սովետական իշխանության տարիներին իր արդյունաբերական արտադրությունն ավելացրեց 39 անգամ, ապա արդյունաբերական արտադրությունը նույնքան անգամ ավելացնելու համար Անգլիային պետք էր 162 տարի (1790 թ. մինչև 1951 թ.)։ Իսկ ինչ վերաբերվում է ԱՄՆ-ին, ապա վերջին 35 տարվա ըն-

թացքում նրանք արդյունաբերական արտադրանքի արտադրությունը ավելացրել են միայն 2,6 անգամ։

Սովետական երկրի ժողովուրդների բարեկամության և եղբայրության ցեմենտող ուժը հանդիսանում է ռուս մեծ ժողովուրդը, որպես Սովետական Միության մեջ մտնող բոլոր ազգերից ամենաականավորը, ամենանշանավորը։ Սոցիալիստական ազգերի մեծագույն նվաճումները, որոնք ձեռք են բերվել միասնական բազմազգ Սովետական պետության սիստեմում, միջազգային հսկայական նշանակություն ունեն։

Հսկայական չափով աճել է Սովետական Միության դերը ժամանակակից միջազգային կյանքում։ Կյանքը հաստատեց ընկեր Ստալինի նշանավոր խոսքերը այն մասին, որ սովետական ռեսպուբլիկաների միավորումը հնարավորություն կտա Սովետական պետությանը զարգանալու և դառնալու միջազգային մի հզոր ուժ, որը հսկայական ազդեցություն է թողնում միջազգային ամբողջ իրադրության վրա, խաղաղության դե-



մոկրատիայի և սոցիալիզմի լագերում համախմբելով աշխարհի պրոգրեսիվ ուժերին։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրների աշխատավորները, սովորելով ՍՍՌՄ-ի օրինակից, հաջողությամբ կառուցում են սոցիալիզմ, կազմակերպում ազատ ժողովուրդների փոխադարձ համագործակցությունը և օգնությունը։ Սովորելով ՍՍՌՄ-ի օրինակից, կապիտալիստական երկրների աշխատավորները տեսնում են շահագործումից, ճնշումից և իրավազրկությունից դեպի ազատություն ու անկախություն, ազգամիջյան երկպառակությունից ու թշնամությունից դեպի ժողովուրդների եղբայրական բարեկամությունը տանող ուղին։ Այժմ ավելի՝ քան երբեք, վառ կերպով արտահայտվում է ժողովուրդների բարեկամության սովետական իդեոլոգիայի հաղթանակը, նրա գերազանցությունը ռասայական գազանային շովինիզմի ու ազգային թշնամանքի բուրժուական իդեոլոգիայի նկատմամբ, որի կրողները այսօր հանդիսանում են ամերիկա-անգլիական գաղութարարները։

Սովետական երկրի ժողովուրդները ամբողջ աշխարհին ցույց տվին, թե ինչպիսի հզոր ու

անխորտակելի ուժ ունի ժողովուրդների ստալինյան բարեկամության վրա հիմնված սովետական սոցիալիստական բազմազգ պետությունը։

Լենինի անմահ գործի հանճարեղ շարունակող ընկեր Ստալինը 1924 թվին Վլադիմիր Իլյիչի դագաղի առջև երդվեց ամրապնդել և ընդլայնել Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունը։ Անցած ժամանակաշրջանում կոմունիստական պարտիան պատվով է կենսագործել մեծ Ստալինի երդումը. ամրապնդել և ընդլայնել է ՍՍՌՄ-ը։

Եթե 1922 թվականի դեկտեմբերի 30-ին Սովետների Համամիութենական առաջին համագումարի որոշմամբ ՍՍՌՄ-ի կազմի մեջ մտան 4 միութենական ռեսպուբլիկա, ապա 1940 թվականին ՍՍՌՄ-ը դարձավ 16 իրավահավասար ռեսպուբլիկաների Միություն։ Սովետական ժողովուրդները դրա համար պարտական են ընկեր Ստալինին, որի «... մեծ ծառայությունն այն է, որ իր իմաստուն ղեկավարությամբ նա ապահովեց մեր երկրի բոլոր ժողովուրդների ֆիզիկական ու հոգևոր ուժերի իսկական վերածնունդն ու աննախընթաց վերելքը..., եղբայրական անխախտ բարեկամությամբ համախմբեց ու նրանց ջանքերն ուղղեց դեպի միասնական մեծ նպա-



տակը՝ դեպի մեր Հայրենիքի հզորության ամրապնդումը և կոմունիզմի հաղթանակը» (Բերիա)։

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության կազմավորման 30-ամյակը զուգադիպում է մի այնպիսի նշանավոր ժամանակաշրջանի հետ, երբ սովետական ժողովուրդը զինված հարազատ կոմունիստական պարտիայի 19-րդ համագումարի պատմական որոշումներով և ընկեր Ստալինի «Սոցիալիզմի տնտեսական պրոբլեմները ՍՍՌՄ-ում» կլասիկ աշխատությամբ, քաղաքական ու աշխատանքային խանդավառության աննախընթաց վերելքի պայմաններում ձեռնամուխ է եղել պարտիայի 19-րդ համագումարի որոշումների կենսագործմանը։

Սովետական Միության ժողովուրդները անհողդողդ կերպով համոզված են ու վստահ, որ ՍՍՌՄ-ում ստալինյան անխախտ բարեկամությամբ համախմբված՝ նրանք անպարտելի են և հաջողությամբ կկառուցեն կոմունիստական հասարակարգ։

# ԽՆԱՅՈՂՈՒԹՅԱՆ ՌԵԺԻՄԸ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ՎԵՐԵԼՔԻ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ԼԾԱԿՆ Է

*ՍՍՌՄ զարգացման նոր հնգամյա պլանի վերաբերյալ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվներում նոր խնդիրներ են դըրվում մեր արդյունաբերության և գյուղատնտեսության առաջ՝ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության է՛լ ավելի զարգացման համար։*

*ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման համար կարևորագույն պայման է հանդիսանում խնայողության ռեժիմը, որովհետև մեր ժողովրդական տնտեսության զարգացումը իրականացվում է սեփական ռեսուրսների հաշվին, կուտակման ներքին աղբյուրների հաշվին։*

*Պարտիայի 19-րդ համագումարում իր հաշվետու զեկուցման մեջ ընկ. Մալենկովը նշեց. «Այժմ, երբ մեր երկրում իրականացվում է ժողովրդական տնտեսության նոր*



*հզոր վերելք և դրա հետ միաժամանակ անց է կացվում մասսայական սպառման ապրանքների գների սիստեմատիկ իջեցում, խնայողության ռեժիմը է՛լ ավելի մեծ նշանակություն է ստանում»։ Իսկ խնայողության համար ամենից առաջ անհրաժեշտ է, որ ավելի լրիվ ու ռացիոնալ կերպով օգտագործվեն արտադրական ռեսուրսները, խնայողաբար և հաշվենկատորեն վարվի մեր տնտեսությունը, որով մենք կհասնենք հաջողությունների ժողովրդական տնտեսության զարգացման բոլոր ճյուղերում և ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի բարձրացման գործում։*

*Խնայողության համար գլխավոր պայման է արտադրական կարողությունների լրիվ օգտագործումը։ Դրա համար, ամենից առաջ, հարկավոր է խնայողաբար ծախսել հումքը, վառելիքը, էլեկտրաէներգիան, գործիքները, նյութերը և վերացնել խոտանը, որոնք անպայման կնպաստեն արտադրանքի բարձրացման գործին, խնայողության գործին։*

*Թե որքան մեծ է խնայողաբար աշխատելու օգուտը ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության համար, պարզ երևում է 1951 թվականի տնտեսական պլանների հիման վրա արված հետևյալ հաշվարկումներից։*

Մետալուրգիական արդյունաբերության մեջ օգտագործվող մազութի մեկ տոկոսի խնայողությունը մեր երկրին հնարավորություն կտա լրացուցիչ կերպով ձուլելու մի քանի հարյուր հազար տոննա պողպատ։ Շինարարության արժեքի մեկ տոկոսի իջեցումը հնարավորություն կտա տարեկան լրացուցիչ բնակելի շենքեր կառուցել 100 հազար մարդու համար։

Խորապես գիտակցելով խնայողության հսկայական նշանակությունը, հետևելով մեր մեծ Միության առաջավոր ձեռնարկությունների օրինակին՝ մեր ռեսպուբլիկայի արտադրական օբեկտներում օրեցօր ծավալվում է պայքարը խնայողության համար։

Ընթացիկ տարվա 10 ամսվա ընթացքում Երևանի Մուլիտի գործարանի բանվորներն ու ինժեներա-տեխնիկական աշխատողները արտադրական կարողությունների լրիվ օգտագործման, աշխատանքի ստախանովյան մեթոդների արմատավորման շնորհիվ ձեռք բերեցին հսկայական հաջողություններ։ Այդ ժամանակամիջոցում գործարանը խնայեց ավելի քան 230 տոննա հումք և 670 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։ Գործարանը 10,5 ամսվա ընթացքում տվեց ավելի քան 189 հազար ռուբլու արտապլանային կուտակում։



ժողովրդական տնտեսության զարգացման խնդիրները հաջողությամբ լուծելու համար, տնտեսական պլանների կատարման և խնայողության ռեժիմի պահպանման համար՝ մեր տնտեսվարները պետք է կատարելապես տիրապետեն սոցիալիստական տնտեսվարման մեթոդներին, բարձրացնեն իրենց տեխնիկական և տնտեսվարման պատրաստության մակարդակը, անընդհատ բարելավեն արտադրության մեթոդները, որոնեն, գտնեն և օգտագործեն ժողովրդական տնտեսության ընդերքում թաքնված ռեզերվները։

Խնայողության ռեժիմի պահպանումով՝ ինքնստինքյան, կանխորոշվում է արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու հարցը։ Աշխատանքի առաջավոր մեթոդների արմատավորումը, արտադրական տեխնոլոգիան կատարելագործելը՝ հնարավորություն կտան բարելավելու տեխնիկա-տնտեսական ցուցանիշները, տնտեսելու հումքն ու էներգիան և իջեցնելու արտադրանքի ինքնարժեքը։

Հայտնի է, որ կարբիդի արտադրության մեջ արտադրանքի հիմնական տարրերը կազմում են էլեկտրական էներգիան, կիրը և ածխածնային նյութերը, որոնց տնտեսումից էլ կախված է ինքնարժեքի իջեցումը։ Երևանի Կարբիդի գործարանի կոլեկտիվը հաշվի առ-

նելով այս հանգամանքը, հատուկ ուշադրություն նվիրեց այդ նյութերի տնտեսումն ապահովելու գործին։ Այս տեսակետից ուշագրավ է անվանի կարբիդագործ Պ. Ռուշանյանի մշակած ստախանովյան մեթոդը։ Նա ստեղծել է էլեկտրական էներգիան տնտեսելու, կարբիդի վառարաններն ավելի արդյունավետ ձևով օգտագործելու նոր եղանակ։ Այս և առաջավոր աշխատանքի այլ մեթոդներ կիրառելու, արտադրության տեխնոլոգիան կատարելագործելու շնորհիվ գործարանը զգալի հաջողություններ ձեռք բերեց տնտեսա-տեխնիկական ցուցանիշների բարձրացման ուղղությամբ։ Միայն ընթացիկ տարվա 5 ամսում տնտեսվել է 630 տոննա կիր, 30 տոննա ածխածնային նյութեր, մեծ քանակությամբ էլեկտրական էներգիա և օժանդակ նյութեր։ Այսպիսով, ինքնարժեքի իջեցումից ստացված օգուտները այդ ժամանակամիջոցում կազմեցին 1 միլիոն 830 հազար ռուբլի, իսկ արտապլանային օգուտները՝ 531 հազար ռուբլի։ Անցյալ տարվա համեմատությամբ 2—3 տոկոսով բարձրացավ ագրեգատների կարողությունը, իսկ արտադրանքի թողարկումը ավելացավ 14,5 տոկոսով։

Խնայողության համար մղվող պայքարում



կարևոր է նաև ամեն տեսակ կատարելագործումների և գյուտերի արմատավորումը արտադրության մեջ, որը բարձրացնում է աշխատանքի արտադրողականությունը և հեշտացնում աշխատանքը։

Երևանի Ավտոդողերի գործարանի հավաքման ցեխի փականագործ Խ. Համբարձումյանը ռետինապատ կորդից օղակներ պատրաստող ագրեգատի վրա հարմարեցրել է իր մշակած կոնստրուկցիայի տափօղակը, որը հնարավորություն է տալիս յուրաքանչյուր հերթափոխությունում տնտեսել 5—6 կիլոգրամ ռետին, 10 կիլոգրամ մետաղալար։ Այդ նորարարությունը միաժամանակ խիստ կերպով կրճատել է արտադրական կորուստներն ու մնացուկները, բարձրացրել արտադրանքի որակը։ Ռացիոնալիզատորական այս և նման արժեքավոր առաջարկությունների արմատավորման շնորհիվ ընթացիկ տարում ստացվել է ավելի քան 312 հազար ռուբլու օգուտ։ Գործարանի արտադրության մեջ ընթացիկ տարում արմատավորվել է 85 ռացիոնալիզատորական առաջարկություն, որը փայլուն կերպով ցույց է տալիս մեր մարդկանց անձնվեր պայքարը արտադրության մեթոդների կատարելագործման, աշխատանքի արտադրողականության բարձրացման ուղղու-

թյամբ։ Մեր պարտիան խնայողության ռեժիմը դիտում է որպես ներտնտեսական կուտակումներ ստեղծելու և կուտակված միջոցները ճիշտ օգտագործելու կարևորագույն պայման։

Արտադրանքի քանակը ձեռնարկությունների ներքին ռեսուրսների լավագույն օգտագործման հաշվին ավելացնելը, ձեռնարկություններում արտադրանքի ինքնարժեքի պլանավորման գործում խախտումները վերացնելը՝ մեծապես կօգնեն խնայողության ռեժիմի կիրառմանը։

Ձեռնարկությունում արտադրական պայմանները հարկ եղածին պես ուսումնասիրելը, արտադրանքի ինքնարժեքի սիստեմատիկ իջեցումն ապահովելը, այս առումով էլ ինքնարժեքի պլանավորումը պլանային ստույգ հաշվարկների միջոցով կատարելը կօգնեն և կնպաստեն հումքի ու նյութերի ծախսման խնայողությանը և արտադրանքի աշխատատարության ցուցանիշների կայունացմանը։

Մեծ է ագիտատորների պատասխանատվությունը խնայողության ռեժիմի պահպանման մասին ագիտզրույցներ կազմակերպելիս։ Մասսայականացնելով պարտիայի 19-րդ համագումարի նյութերը, ագիտատորը պետք է ունկնդիրներին հաղորդի տեղական փաս-



տեր։ Վերցնելով սեփական գործարանի, ձեռնարկության, կոլտնտեսության արտադրությունից օրինակներ, ագիտատորը կկարողանա լավագույն ձևով ամրապնդել նյութը։ Ցույց տալով տեղական ռեսուրսները, նշելով հնարավորություններ և միջոցառումներ առավել նպատակահարմար օգտագործելու արտադրական կարողությունները, ավելացնելու ձեռնարկության շահութաբերությունը և իջեցնելու արտադրանքի ինքնարժեքը, ագիտատորը կնպաստի կենսագործելու պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվները ՍՍՌՄ զարգացման նոր հնգամյակի վերաբերյալ։

Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ կոմունիզմ կառուցող մեր սովետական ժողովուրդը աշխատանքային խանդավառության չտեսնված վերելքում և սոցիալիստական մրցության պայմաններում կըհասնի որոշակի հաջողությունների նյութական միջոցների տնտեսման, ձեռնարկությունների շահութաբերության բարձրացման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման ուղղությամբ և կկենսագործի պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվները ՍՍՌՄ զարգացման հնգերորդ հնգամյակի վերաբերյալ։

Մ. ՍԱՐԳՍՅԱՆ

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԽՆԴԻՐՆԵՐԸ

*Սովետական Միության ժողովուրդների և աշխարհի պրոգրեսիվ մարդկության կյանքում պատմական մեծ նշանակություն ունեցող իրադարձություն էր մեր պարտիայի 19-րդ համագումարը, որը ամփոփեց սովետական ժողովրդի ձեռք բերած համաշխարհային պատմական հաղթանակները և նշեց պարտիայի ու երկրի առջև դրված հետագա առաջընթացի վիթխարի խնդիրները։*

*ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման բնագավառի խնդիրները հաջողությամբ լուծելու համար հսկայական նշանակություն ունի սոցիալիստական մրցության հետագա ծավալումը։*

*«Սոցիալիստական մրցության մեծ ուժը,— ասված է ՍՍՌՄ զարգացման 1951—1955 թվականների հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվներում,— խաղաղության գործը պաշտպանելու համար բանվորների, կոլտնտեսականների և ինտելիգենցիայի միահա-*



*մուռ ձգտումը, կոմունիստական հասարակարգ կառուցելու ասպարեզում աշխատավորների անսասան վճռականությունը պետք է ուղղված լինեն նոր հնգամյակի կատարման ու գերակատարման նպատակին»։*

*Սովետական երկրի միլիոնավոր աշխատավորների ստեղծագործական կենդանի գործունեությունը հզոր ուժ է մեր մեծ պլանների կատարման համար մղվող պայքարում, որովհետև* «Իրականում արտադրական պլանը,— *ասել է ընկեր Ստալինը,—* միլիոնավոր մարդկանց կենդանի ու պրակտիկ գործունեությունն է: Մեր արտադրական պլանի իրական լինելը՝ դա նոր կյանք ստեղծող միլիոնավոր աշխատավորներն են: Մեր ծրագրի իրական լինելը՝ դա կենդանի մարդիկ են. այդ մենք ենք ձեզ հետ միասին, աշխատելու մեր կամքը, նոր ձևով աշխատելու մեր պատրաստակամությունը, պլանը կատարելու մեր վճռականությունը»:

*Մեր պարտիան միշտ էլ մեծ նշանակություն է նվիրել սոցիալիստական մրցության կազմակերպման գործին և մրցության մեջ գլխավորը համարել է՝ առաջ քաշել ետ մնացողներին, աշխատանքում հավասարվել լավագույններին և ձեռք բերել ընդհանուր վերելք։*

Ներկայումս սոցիալիստական մրցության կարևորագույն տարբերիչ առանձնահատկությունն այն է, որ աշխատավորներն արդեն չեն բավարարվում աշխատանքի միմիայն քանակական ցուցանիշներով, այլ միաժամանակ աշխատում են արտադրության յուրաքանչյուր տեղամասում հասնել որակական բարձր ցուցանիշների, և ամբողջ կոլեկտիվով կատարելու ստախանովյան աշխատանք։ Ներկա ժամանակաշրջանում, երբ մեր ժողովուրդը կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ անցում է կատարում սոցիալիզմից դեպի կոմունիզմ, առանձնակի նշանակություն է ստանում մասսաների մեջ տարվող քաղաքական և դաստիարակչական աշխատանքների կազմակերպումը։ Ագիտատորները, պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ, պետք է աշխատավորների մեծ խանդավառությունը և նրանց ստեղծագործական նախաձեռնությունը, որ առաջ են բերել պարտիայի 19-րդ համագումարի որոշումները, ուղղեն նոր հնգամյակի խնդիրները կատարելու և գերակատարելու նպատակին, սոցիալիստական մրցության մեջ ընդգրկեն բոլորին, օգնեն նրանց ստանձնած պարտավորությունները կոլեկտիվ և անհատական պայ



մանագրերում ձևակերպելու, այն ժամանակին և բարձր որակով կատարելու համար։

Մրցության հաջողությունը մեծ չափով կախված է այն բանից, թե ինչպես է ստուգվում մրցության ընթացքը և ինչպես են ստուգման արդյունքները քննարկվում ձեռնարկությունների ժողովներում ու խորհրդակցություններում։ Ագիտատորը կազմակերպելով սոցիալիստական մրցության գործը տվյալ տեղամասում, պետք է նաև տեղյակ լինի ստուգման արդյունքներին, ամեն օր իր մոտ դրանցի մրցության արդյունքները և ագիտացիոն պարապմունքներում սիստեմատիկաբար հրապարակի այն, խրախուսի առաջավորներին, ծավալի գործարար ինքնաքննադատություն, վեր հանի աշխատանքում եղած թերությունները և օգնի ետ մնացողներին՝ հասնելու առաջավորներին։

Ընկեր Ստալինը սովորեցնում է, որ «Չի կարելի սոցիալիստական մրցությունը դիտել, որպես գրասենյակային գործ։ Սոցիալիստական մրցությունը մասսաների՝ միլիոնավոր աշխատավորների ստեղծագործական նախաձեռնության վրա հենվող գործնական ռևոլյուցիոն ինքնագործունեության արտահայտությունն է»։ Սոցիալիստական մրցության գործը կազմակերպելու և ղեկավարելու ամբողջ ընթացքում ագիտատորները պետք է մշտա-

պես ճիշտ և ղեկավարվեն ընկեր Ստալինի այս ցուցումով։

Գլխավորելով աշխատավորների խանդավառությունը և նրանց ընդգրկելով մրցության մեջ, ագիտատորները պետք է խոր ուսումնասիրեն և արտադրության մեջ արմատավորեն աշխատանքում ցույց տրվող այն դրական օրինակները, որ առաջ է քաշում մրցությունը՝ սոցիալիստական շինարարության բոլոր տեղամասերում։ Ագիտատորների խնդիրն է՝ առաջինը տեսնել և բոլոր ուժերով պաշտպանել արտադրության կազմակերպման լավագույն օրինակները, առաջավորների և նորարարների պրոգրեսիվ նախաձեռնությունները, աշխատավորների ամբողջ մասսայի մեջ ամեն կերպ տարածել առաջավոր փորձը, հետևել նոր մեթոդների արմատավորմանը և դրանով իսկ օգնել ետ մնացողներին՝ բարձրանալու առաջավորների մակարդակին։

Սոցիալիստական մրցության մեջ աշխատանքի արտադրողականության բարձրացման և արտադրանքի որակի բարելավման համար մղվող պայքարը եղել է և մնում է մրցողների գլխավոր նպատակը։ Մեր երկրի յուրաքանչյուր ձեռնարկությունում սիստեմատիկ պայքար է մղվում աշխատանքի արտադրո-



ղականության բարձրացման և թողարկվող արտադրանքի տեսականու բարձրացնելու համար։ Ագիտատորները իրենց քաղաքական աշխատանքով պետք է նպաստեն աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, որովհետև մեծ Լենինի բառերով ասած՝ «Աշխատանքի արտադրողականությունը, դա, վերջին հաշվով, ամենակարևորն է, ամենագլխավորը նոր հասարակարգի հաղթության համար»։

Ռեսպուբլիկայի արտադրական ձեռնարկությունները, կոլտնտեսությունները ծավալում են գործարար սոցիալիստական մրցություն աշխատանքի արտադրողականությունը և թողարկվող արտադրանքի որակը բարձրացնելու համար։ Երևանի Փոքր հիդրոտուրբինների գործարանի կոլեկտիվը, սոցիալիստական լայն մրցության ծավալման շնորհիվ, աշխատանքի արտադրողականությունը 1952 թվականին, 1951 թվականի համեմատությամբ, բարձրացրել է 16 տոկոսով, Երևանի Ավտոդողերի և ակումուլյատորների նորոգման գործարանը այս տարվա 11 ամսում աշխատանքի արտադրողականությունը բարձրացրել է 36,7 տոկոսով, Երևանի Քիմիական գործարանում այս տարի, անցյալ տարվա համեմատությամբ,

աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 30 տոկոսով, Երևանի Կիրովի անվան գործարանում արտադրության տեխնոլոգիան կատարելագործելու և կադրերի որակավորումը բարձրացնելու շնորհիվ՝ աշխատանքի արտադրողականությունը վերջին հինգ տարիների ընթացքում բարձրացել է երեք անգամ։

Վերջերս Օբուխովոյի Լենինի անվան նուրբ մահուդի ֆաբրիկայի ստախանովական բանվորուհի Նինա Ամելչենկովան հանդես եկավ հայրենասիրական արժեքավոր նախաձեռնությամբ, առաջարկելով արտադրանքի տեսակայնությունը բարձրացնելու համար ծավալել լայն սոցիալիստական մրցություն և բարձրացնել պահանջը առաջին տեսակի արտադրանքի նկատմամբ, վերացնել հնացած ստանդարտները։

Ստախանովական բանվորուհի Նինա Ամելչենկովայի հայրենասիրական նախաձեռնությունը մեծ արձագանք և ընդունելություն է գտնում մեր ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններում, ամենուրեք բանվորները, ինժեներա-տեխնիկական անձնակազմը կոնկրետ պարտավորություններ են ստանձնում պայքարելու արտադրանքի տեսակայնությունը բարձրացնելու համար։

Ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռ-



նարկությունները, ՄՏ կայանները, կոլտնտեսությունները և մյուս կազմակերպությունները ամփոփում են նոր հնգամյակի երկրորդ տարվա արդյունքները։ Սկսվում է 1952 թվականի անհատական ու կոլեկտիվ պայմանագրերի ստուգման և 1953 թվականի կոլեկտիվ պայմանագրերի կնքման ժամանակը։ Այս օրերին ագիտատորների առաջնահերթ խնդիրն է՝ է՛լ ավելի լայնորեն ծավալել սոցիալիստական մրցությունը՝ յուրաքանչյուր ձեռնարկության, ցեխի, աշխատամասի կողմից պետական պլանի կատարման ու գերակատարման համար, արտադրանքի տեսակայնության հետագա բարձրացման և նրա ինքնարժեքի իջեցման համար, հումքը, վառելիքը, էլեկտրաէներգիան խնայողաբար ծախսելու, արտադրության ներքին ռեզերվները լիովին օգտագործելու և աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու համար։ Պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ ագիտատորները պետք է ծավալեն գործարար ինքնաքննադատություն և ապահովեն ներքևից եկող քննադատությունը, ուշի ուշով ունկնդրեն աշխատավորների առաջարկություններին և օգնեն ժամանակին կենսագործելու այդ առաջարկությունները։

# ԱԳԻՏԱՑԻԱՆ ԵՐԿԱԹՈՒՂԱՅԻՆՆԵՐԻ ՇՐՋԱՆՈՒՄ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 19-րդ համագումարը մեր պարտիայի և սովետական ժողովրդի պատմության մեջ մտավ, որպես կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարի կարևորագույն ուղենիշ։ Պարտիայի 19-րդ համագումարն ամփոփեց սովետական ժողովրդի ձեռք բերած պատմական հաղթանակները ժողովրդական տնտեսության և կուլտուրայի բոլոր բնագավառներում, այդ թվում նաև երկաթուղային տրանսպորտի նվաճումները։ Ընկ. Գ. Մ. Մալենկովը Կենտրոնական Կոմիտեի հաշվետու զեկուցման մեջ ցույց տվեց այն խոշոր նվաճումները, որ ձեռք են բերել մեր երկրի երկաթուղայինները, որոնք ապահովել են ժողովրդական տնտեսության համար բեռների փոխադրումների կարևորագույն խնդիրը։ Բավական է նշել, որ ընթացիկ տարում երկաթուղային տրանսպորտի բեռնաշրջանառությունը 80 տոկոսով ավելի



է, քան 1940 թվականին։ Ընկ. Մալենկովը միաժամանակ ցույց տվեց, որ երկաթուղային տրանսպորտի աշխատանքում դեռ կան խոշոր թերություններ, որ շատ երկաթուղիներ չեն կատարում բեռների բեռնման և փոխադրման՝ իրենց համար սահմանվող պլանները, դեռևս մեծ են վագոնների պարապուրդները՝ բեռնման և բեռնաթափման պահին։

Ընկ. Գ. Մ. Մալենկովը տրանսպորտի և կապի բնագավառի աշխատողների առաջ խնդիր դրեց։ «...Էլ ավելի զարգացնել ու կատարելագործել տրանսպորտի և կապի բոլոր տեսակների աշխատանքը, խնայել տրանսպորտային միջոցները և անդուլ հոգատարություն ցուցաբերել դրանց պահպանման նկատմամբ, զարգացնել և ամրապնդել տրանսպորտի բոլոր տեսակների տեխնիկական բազան. ամեն կերպ բարելավել փոստի, հեռագրի, հեռախոսի աշխատանքը»։

ՍՍՌՄ զարգացման 1951—1955 թվականների հնգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվներում 1955 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, նախատեսվում է երկաթուղային տրանսպորտում բեռնաշրջանառության աճ 35—40 տոկոսով, երկրորդ

ուղիների գործարկման ավելացում՝ 60 տոկոսով։ 1946—1950 թվականների համեմատությամբ շահագործման կհանձնվեն 2 և կես անգամ ավելի նոր երկաթուղիներ։ Մեր երկրի արդյունաբերական ձեռնարկությունները ձեռնամուխ կլինեն նոր, հզոր շոգեքարշերի, էլեկտրաքարշերի և ջերմաքարշերի արտադրությանը։

Երևանի երկաթուղային բաժանմունքի հիմնարկ-ձեռնարկությունների պարտիական կազմակերպությունները ագիտկոլեկտիվների միջոցով երկաթուղայինների շրջանում մասսայականացնելով ՍՄԿԿ 19-րդ համագումարի պատմական որոշումները, օգտագործելով ագիտացիայի բոլոր հնարավոր ձևերը, ամբողջ քաղաքական աշխատանքը ուղղում են լիկվիդացնելու այն թերությունները, որոնք նշված են ընկ. Մալենկովի զեկուցման մեջ և ժամկետից շուտ կատարելու ու գերակատարելու նոր հնգամյակում նախատեսված խնդիրները։

Լենինականի վագոնային, շոգեքարշային դեպոների, Երևանի շոգեքարշային դեպոյի, Սանահինի դեպոյի, երկաթուղային բաժանմունքի կայարանների և մյուս ձեռնարկությունների սկզբնական պարտիական կազմակերպությունները սիստեմատիկ աշխա-



տանք տանելով ագիտատորների հետ, նրանց միջոցով լայնորեն մասսայականացնում են 19-րդ համագումարի նյութերը երկաթուղայինների մեջ։ Լենինականի վագոնային դեպոյի ագիտատոր Ք. Ղարագյոզյանը մասսայականացնելով 19-րդ համագումարի նյութերը, այն կապում է վագոնային դեպոյի առջև կանգնած կոնկրետ խնդիրների հետ, նա իր ագիտացիոն զրույցներից մեկում, խոսելով պարտիայի 19-րդ համագումարի նշանակության մասին, ասաց— սոցիալիզմից կոմունիզմին անցնելու մեծ ծրագրի անշեղ իրագործումը կախված է նաև մեզանից, մեր ամենօրյա լավ աշխատանքից, նրանից, թե մեզանից յուրաքանչյուրն իր աշխատամասում ինչպես կպայքարի ՍՍՌՄ զարգացման նոր հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար։ Զրույցի ժամանակ ագիտատորը կոնկրետ օրինակով ցույց տվեց, որ իրենց կոլեկտիվը անցած 11 ամսում, արտապլանային կարգով, նորոգումներից բաց թողեց մի քանի տասնյակ վագոն, մեծ հաջողություն ձեռք բերեց հումքի տնտեսման և ինքնարժեքի իջեցման ուղղությամբ, որ 1952 թվականին տնտեսված հումքի և նյութեղենի հաշվին վերանորոգման է ենթարկ-

վել 150 վագոն, արտադրանքի ինքնարժեքը իջեցնելով 10,4 տոկոսով։ Ագիտատորը զրույցի վերջում մեջ բերելով ընկ. Մալենկովի խոսքերն այն մասին, որ «Ժողովրդական տնտեսության զարգացման բնագավառի խնդիրները հաջողությամբ լուծելու համար հսկայական նշանակություն ունի սոցիալիստական մրցության հետագա ծավալումը», կոչ արեց բանվորներին ծավալել գործարար սոցիալիստական մրցություն հնգերորդ հնգամյակը կատարելու և գերակատարելու համար։

Համագումարի այն ցուցումը, թե նոր հնգամյակում պետք է զգալիորեն ավելացնել բեռնատար գնացքների կշիռը, աշխատանքային նոր լիցք տվեց Սանահինի շոգեքարշային դեպոյի կոլեկտիվին, որը ժամկետից երկու ամիս շուտ կատարեց լոկոմոտիվների վազքի և նորոգումների տարեկան պլանները, տալով 152 տոննա վառելանյութի և 95 հազար ռուբլու միջոցների խնայողություն։ Դեպոյականները ծանրաքարշ գնացքներ փոխադրելու գործում հանդես բերեցին արժեքավոր նախաձեռնություն, նրանք Սանահին—Թբիլիսի ուղեմասում կազմակերպելով ծանրաքարշ գնացքների փոխադրումը, մի քանի հարյուր տոննայով ա-



վելացրին բեռների փոխադրման նորմանները։ Այսպես, օրինակ, մեքենավարներ Ս. Մալխասյանը և Ս. Բոշյանը Սանահինից—Թբիլիսի փոխադրեցին մի ծանրաքարշ գնացք, որի կշիռը 366 տոննայով ավելի էր նախատեսված նորմայից։ Ագիտատորները մասսայականացրին մեքենավարներ Ս. Մալխասյանի և Ս. Բոշյանի նախաձեռնությունը։ Մեքենավարներ Մ. Սարգսյանը, Ս. Մաթինյանը, Թ. Ճուղուրյանը, Մ. Սուքիասյանը և ուրիշներ նույնպես փոխադրում են ծանրաքարշ գնացքներ, որոնք պլանից ավելի 200—300 տոննա բեռներ են տեղափոխում, միաժամանակ խնայելով մեծ քանակությամբ վառելանյութ։

Շոգեքարշային այն շարասյունը, որի ղեկավարն է հրահանգիչ-մեքենավար, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Ա. Խաչատրյանը, 1952 թվականի 11 ամսում տնտեսել է 850 տոննա վառելանյութ, լոկոմոտիվների վազքի նորման գերազանցված է կրկնակի չափով, միաժամանակ հիմնական դետալների օգտագործման ժամանակամիջոցը երկարացնելու շնորհիվ տնտեսվել է 450 հազար ռուբլի։

Երևանի շոգեքարշային դեպոյի ագիտատորներ՝ Վ. Գաբրիելյանը, Ա. Ավագյանը, կայարանի հերթափոխ ագիտատոր՝ Ե. Հով-

սեփյանը և ուրիշներ, իրենց ունկնդիրների շրջանում մասսայականացնելով ընկ. Մալենկովի զեկուցումը, ցույց են տալիս, որ տրանսպորտի աշխատանքների բնագավառում ընկ. Մալենկովի կողմից նշված թերությունները վերաբերում են նաև իրենց ձեռնարկություններին, և նշում են միջոցառումներ, ելնելով իրենց ներքին ռեսուրսներից, եղած թերությունները լիկվիդացնելու համար։

Համագումարի նյութերի մասսայականացման ընթացքում ամբողջ քաղաքական աշխատանքը ուղղվեց Երևանի կայարանի աշխատանքները բարելավելու, եղած թերությունները լիկվիդացնելու գործին։ Այդ աշխատանքի արդյունքը եղավ այն, որ եթե Երևան կայարանը, որ մի ժամանակ վատ էր աշխատում, թերակատարում էր բեռնման, բեռնաթափման նորմաները, մեծ չափերի էր հասնում վագոնների պարապուրդները, ապա Համագումարի նյութերի մասսայականացման ընթացքում առաջ եկած աշխատանքային մեծ խանդավառության, գործարար սոցիալիստական մրցության լայն ծավալման շընորհիվ այժմ հաջողությամբ է կատարում իր առջև դրված խնդիրները, դարձել է առաջավոր կայարան, ո՛չ միայն կատարում, այլ



գերակատարում է պետական առաջադրանքները։

Պարտիայի 19-րդ համագումարի նյութերի, ընկեր Ստալինի պատմական ճառի և նրա «Սոցիալիզմի տնտեսական պրոբլեմները ՍՍՌՄ-ում» կլասիկ աշխատության խորը ուսումնասիրությունը և մասսայականացումը Երևանի երկաթուղային բաժանմունքի ձեռնարկություններում և կայարաններում առաջ է բերել արտադրական նոր վերելք։ Արտաշատ, Անի, Արթիկ, Սպիտակ և ուրիշ կայարաններ ժամկետից շուտ կատարելով բեռների փոխադրումների տարեկան առաջադրանքները, արդեն աշխատում են 1953 թըվականի հաշվին։

Երևանի երկաթուղային բաժանմունքի պարտիական կազմակերպությունների և ակտիվների առաջնահերթ խնդիրն է՝ գլխավորել երկաթուղայինների և բանվորների աշխատանքային խանդավառությունը 19-րդ համագումարի որոշումները կենսագործելու, ստալինյան հինգերորդ հնգամյա պլանը ժամկետից շուտ և որակական բարձր ցուցանիշներով կատարելու և գերակատարելու համար։

Ա. ԹԻՐԱԲՅԱՆ

Անդրկովկասյան երկաթուղու Երևանի բաժանմունքի քաղբաժնի պետ

# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## I

## 29 ՏԱՐԻ ԱՌԱՆՑ ԼԵՆԻՆԻ, ԸՆԿԵՐ ՍՏԱԼԻՆԻ ՂԵԿԱՎԱՐՈՒԹՅԱՄԲ՝ ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ:

*1. Վ. Ի. Լենինը՝ որպես կոմունիստական պարտիայի կազմակերպիչ ու առաջնորդ, որպես սովետական սոցիալիստական պետության ստեղծող։*

*2. Վ. Ի. Լենինի գործի մեծ շարունակող ընկեր Ստալինի ղեկավարությամբ սովետական ժողովուրդը կառուցեց սոցիալիզմ և պաշտպանեց իր նվաճումները արտաքին ու ներքին թշնամիներից։*

*3. Կոմունիզմի կառուցման բնագավառում սովետական ժողովրդի ձեռք բերած աննախընթաց հաջողությունները լենինյան պատգամների ճշգրիտ կատարման արդյունք են։*

*4. Լենինիզմը աշխատավորների պայքարի դրոշն է՝ ամբողջ աշխարհում կոմունիզմի հաղթանակի համար։*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— «Լենինի մասին», *Հայպետհրատ, 1952 թ.։*



ՀամԿ(բ)Պ պատմություն: Համառոտ դասընթաց, *գլուխ 9-րդ, էջ 356—363.։*

Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալին. *Համառոտ կենսագրություն. Հայպետհրատ, 1950 թ.։*

Գ. Մ. Մալենկով.— Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին: *«Ագիտատորի բլոկնոտ», № 19, 1952 թ.։*

Մ. Գ. ՊԵՐՎՈՒԽԻՆ.— Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 35-րդ տարեդարձը: *(Զեկուցում Մոսկվայի Սովետի հանդիսավոր նիստում), «Ս. Հ.», 1952 թ. նոյեմբերի 7-ի համարը։*

## II

## Ի. Վ. ՍՏԱԼԻՆԸ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՄԵԾ ԴՐՈՇԱԿԱԿԻՐ

*1. Վ. Ի. Լենինը և Ի. Վ. Ստալինը Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության հիմնադիրներն են, այն պետության, որը խաղաղության, դեմոկրատիայի ու ժողովուրդների անկախության հենարանն է ամբողջ աշխարհում։*

*2. Սովետական Միության Կոմունիստական պարտիայի արտաքին քաղաքականությունը՝ խաղաղության քաղաքականություն է։*

*3. ՍՍՌՄ-ում կոմունիզմ կառուցելու ստալինյան ծրագիրը՝ աշխարհի բոլոր երկրների աշխատավորության խանդավառության և էնտուզիազմի աղբյուրն է։*

*4. Պարտիայի 19-րդ համագումարում ընկեր*

*Ստալինի արտասանած ճառը ոգեշնչող ծրագիր է խաղաղության համար մղվող պայքարում՝ ընդդեմ պատերազմի հրձիգների։*

*5. Սովետական ժողովրդի կողմից հինգերորդ հնգամյա պլանի ժամկետից շուտ կատարումը ստալինյան արտաքին քաղաքականության հաջողությունների հիմքն է՝ խաղաղության համար մղվող պայքարում։*

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.—Զրույց «Պրավդա»-ի թղթակցի հետ։ *«Պարտիական կյանք» ժուռնալ № 2, 1951 թ.։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ճառ, արտասանած պարտիայի 19-րդ համագումարում։ *«Ագիտատորի բլոկնոտ» № 20, 1952 թ.։*

Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ.—Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին։ *«Ագիտատորի բլոկնոտ № 19, 1952 թ., էջ 257—262։*

Կ. Ե. ՎՈՐՈՇԻԼՈՎ.—Ճառ՝ ՀամԿ(բ)Պ 19-րդ համագումարում, *Հայպետհրատ։*

## III

## ՆՈՐ ՀՆԳԱՄՅԱԿԻ ԵՐՐՈՐԴ ՏԱՐՎԱ ՊԼԱՆՆԵՐԸ ԱՌԱՋԻՆ ԻՍԿ ՕՐԵՐԻՑ ԿԱՏԱՐԵԼ ԲՈԼՈՐ ՑՈՒՑԱՆԻՇՆԵՐՈՎ

*1. 1953 թվականին արտադրական նոր հաջողություններ ձեռք բերելը կարևորագույն ներդրում է ստալին-*



*յան հինգերորդ հնգամյա պլանի կատարման և գերակատարման գործում։*

*2. Ստանձնած պարտավորությունների ամենօրյա կատարումն ու գերակատարումը՝ յուրաքանչյուր աշխատավորի հայրենասիրական պարտքն է։*

*3. Ավելի լայնորեն տարածենք և ամեն կերպ արմատավորենք արտադրության առաջավորների աշխատանքի լավագույն օրինակները։*

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ճառ ՀամԼԿԵՄ Համամիութենական 5-րդ կոնֆերենցիայում։ *Երկեր, հատոր 9, էջ 216—225։*

*Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ* — Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին։ *«Ագիտատորի բլոկնոտ» № 19, 1952 թ., էջ 87—115։*

«Ստեղծել նորարարների մասսայական շարժում»։ *«Ս. Հ.»-ի 1952 թվականի նոյեմբերի 16-ի առաջնորդող հոդվածը։*

---



# ՆՈՐ ԳՐՔԵՐ

*Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել.*

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— «Ի՞նչ են «ժողովրդի բարեկամները» և ինչպե՞ս են նրանք մարտնչում սոցիալ-դեմոկրատների դեմ»: *251 էջ, գինը 4 ռ. 50 կոպ.:*

Ի. ՍՏԱԼԻՆ.— «Մարքսիզմը և ազգային հարցը»: *178 էջ, գինը 2 ռ. 35 կոպ.:*

Մ. ԳՈՐԿԻ.— «Հեքիաթներ Իտալիայի մասին». *գինը 3 ռ. 90 կոպ.:*

ԴԱՆԹԵ ԱԼԻԳԻԵՐԻ.— «Աստվածային կատակերգություն: Քավարան»: *262 էջ, գինը 10 ռ. 15 կոպ.:*

Վ. ՕՍԵԵՎԱ.— «Վասյոկ Տրուբաչովը և նրա ընկերները»: *346 էջ, գինը 6 ռ. 85 կոպ.:*

Հ. ԿԱՐՆԱՈՒԽՈՎԱ.— «Պատմվածք համերաշխների մասին», *242 էջ, գինը 5 ռ. 35 կոպ.:*

ՋԵԿ ԼՈՆԴՈՆ.— «Կյանքի սերը», *պատմվածքների ժողովածու, 167 էջ, գինը 3 ռ. 30 կոպ.:*

*Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի հրատարակությամբ լույս է տեսել.*

Ս. Խ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ.— «Հայկական գավիթների ճարտարապետությունը» (ռուսերեն). *144 էջ, գինը* 18 ռ.:

---

Խտ. խմբագրի՝ Մ. Տ. ՔՈՉԱՐՅԱՆ

Отдел Пропаганды и агитации ЦК КП Армении

**БЛОКНОТ АГИТАТОРА**

№ 24 1952 г.

ՎՖ 07969 Պատվեր 1071 Տիրաժ 9220

Հայպոլիգրաֆհրատի II տպարան, Երևան, Կնունյանցի փ. № 8

ԳԻՆԸ 50 ԿՈՊ.

# ԲԱՑՎԱԾ Է „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ“-Ի 1953 ԹՎԻ

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*Բաժանորդագրությունը ընդունվում է Սոյուզպեչատի և փոստի բոլոր բաժանմունքներում, ինչպես նաև հիմնարկ-ձեռնարկություններում, ֆաբրիկա-գործարաններում, ուսումնական հիմնարկներում, սովխոզներում և կոլտնտեսություններում, մամուլի հասարակական լիազորների մոտ։*

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ՝

**12 ամիսը 24 համարը— 12 ռուբլի**

**6 ամիսը 12 „ — 6 „**

**3 ամիսը 6 „ — 3 „**

**Մեկ համարը — 50 կոպեկ**

**ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ**